Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 19-20 (39)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

---

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 19-20 (39)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945



# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 28-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## ՄՈՍԿՎԱՅԻ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ 1945 Թ. ՆՈՅԵՄԲԵՐԻ 6-ԻՆ

*Ընկերնե՛ր, մի քանի տարիների ծանր պատերազմից հետո Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 28-րդ տարեդարձը մենք այսօր տոնում ենք խաղաղ իրադրության մեջ և ֆաշիզմի դեմ տարած փառավոր հաղթանակի պայմաններում։* (Ծափահարություններ)։

*Անցյալի գիրկն են անցել հիտլերյան Գերմանիայի դեմ մղված այն*

պատերազմի չորս տարիները, որ խոշտանգում էր մեր երկիրն ու ամբողջ Եվրոպան, ինչպես նաև Արևելքում ագրեսիվ Ճապոնիայի դեմ մղված պատերազմը, որի մեջ մենք պետք է մտնեինք այս տարվա աշնանը: Հերոսական պայքարում, որի մեջ սովետական ժողովրդին վճռական տեղն է պատկանում, խաղաղություն նվաճվեց ամբողջ աշխարհի ժողովուրդների համար, լիկվիդացվեցին համաշխարհային ֆաշիզմի և համաշխարհային ագրեսիայի գլխավոր օջախները արևմուտքում և արևելքում: Այժմ մենք հնարավորություն ենք ստացել վերադառնալու խաղաղ աշխատանքի, որպեսզի ամրապնդենք մեր հաղթանակը:

Ինչպես ասել է ընկեր Ստալինը՝ «Մեր սովետական ժողովուրդը ուժ ու աշխատանք չի խնայել հանուն հաղթանակի: Մենք ապրել ենք ծանր տարիներ: Բայց այժմ մեզնից յուրաքանչյուրը կարող է ասել՝ մենք հաղթեցինք: Այժմյանից մենք կարող



ենք մեր հայրենիքը փրկված համարել արևմուտքում՝ գերմանական արշավանքի և արևելքում՝ ճապոնական արշավանքի սպառնալիքից: Հասավ բաղձալի խաղաղությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների համար»:

## I.

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

Գերմանացիները ներխուժեցին մեր երկիրը՝ հույս ունենալով, որ իրենց ավազակային հարձակման հանկարծակիությունը իրենց համար հաջողություն կապահովի: Ո՛չ միայն Գերմանիայում, այլև մյուս երկրներում շատերը կարծում էին, թե Սովետական Միությունը երկար չի դիմանա, թե արդեն մի քանի շաբաթից հետո,—կամ արդեն, համենայն դեպս, մի քանի ամսից հետո,—Գերմանիան կջախջախի ՍՍՌՄ-ին և Հիտլերը կտոնի հաղթանակը: Արևմտյան Եվրոպայում հիտլերականների համեմատաբար

հեշտ ձեռք բերած հաջողություններից հետո շատերին դա թվում էր անխուսափելի։ Այդպիսի եզրակացությունների հանգում էին ամենից առաջ նրանք, ովքեր ընդհանրապես չէին ընդունում Ռուսաստանի Հոկտեմբերյան ռևոլյուցիայի «օրինականությունը», ինչպես նաև նրանք, ովքեր անընդունակ հանդիսացան ըմբռնելու մեր ռևոլյուցիայի ստեղծած սովետական պետության իսկական ժողովրդական բնույթը։ Սովետական Միության վրա գերմանական արշավանքը մեծ փորձություն էր նաև մեր արտասահմանյան բարեկամների համար, որոնք շունչները պահած հետևում էին այն բացառիկ դժվարություններին, որ մեր երկիրը կրում էր պատերազմի առաջին շրջանում։

Սովետական Միությունը կանգուն մնաց, չնայած հարձակման հանկարծակիությանը։ Պատերազմի առաջին տարիներին նրան հասցված նյութական կորուստը և խոր վերքերը չցնցեցին նրա ֆիզիկական



և հոգևոր կարողությունը։ Կարմիր Բանակը կարողացավ վերակառուցվել և իրեն կարգի բերել առաջին հարվածներից հետո։ Սովետական ժողովուրդը լարեց իր ուժերը և խորտակիչ հակահարված ապահովեց թշնամուն։ Բոլորը հիշում են այն ժամանակը, երբ մեր բանակը պաշտպանությունից հարձակման անցավ նախ ռազմաճակատի առանձին հատվածներում, իսկ այնուհետև ամբողջ ճակատով։

Ինքնապաշտպանության շահերը թելադրեցին դեմոկրատական մեծ և փոքր պետությունների հակահիտլերյան միասնական ճակատ ստեղծելու անհրաժեշտությունը։ Բոլորին հայտնի է, որ անգլո-սովետա-ամերիկյան կոալիցիան հաջողությամբ կատարեց իր պատմական խնդիրը հիտլերիզմի դեմ դեմոկրատական երկրների ընդհանուր պայքարը կազմակերպելու գործում։ Հայտնի է նույնպես, որ երկրորդ ռազմաճակատի բացումը Արևմտյան Եվրոպայում, երբ Գերմանիան ընկավ

երկու ռազմաճակատների աքցանի միջև, գերմանական ֆաշիզմի դրությունը դարձրեց անհուսալի։ Դրա հետ միասին չի կարելի մոռանալ, որ սովետա-գերմանական ռազմաճակատում արմատական բեկումը տեղի է ունեցել երկրորդ ռազմաճակատի բացումից դեռևս մեկ տարի առաջ, երբ հիտլերյան զորքերը խայտառակությամբ ետ գլորվեցին Կարմիր Բանակի հզոր և հարաճուն ճնշման տակ։ (Երկարատև ծափահարություններ)։

Այսպես, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ստեղծած պետությունը կարողացավ ո՛չ միայն իրեն պաշտպանել ֆաշիստական հարձակումից, այլև հարձակման անցնել ֆաշիզմի ու ագրեսիայի գլխավոր օջախը ոչնչացնելու համար։ Այն ժամանակ ամենքի համար ակներև դարձավ, որ սովետական իշխանությունը նման չէ անցյալ համաշխարհային պատերազմի ժամանակվա ցարիզմի զառամյալ իշխանությանը։

Այսպես ուրեմն, ակներև դարձավ,



որ սովետական պետությունը կարող է պատվով պաշտպանել իրեն և ընդունակ է դիմանալու ամենածանր փորձություններին, ինչպիսիք երբևիցե եղել էին երկրի պատմության մեջ։ (Ծափահարություններ)։

Հիտլերյան Գերմանիան սպառնում էր ո՛չ միայն սովետական պետությանը։ Դեռևս ՍՍՌՄ-ի վրա հարձակվելուց առաջ գերմանական ֆաշիստները գրավել էին Նորվեգիան, Բելգիան, Հոլլանդիան, Ֆրանսիան, Հունաստանը, Հարավսլավիան։ Գերմանացիները իրենց դաշնակիցների թվում ունեին ո՛չ միայն ֆաշիստական Իտալիան, այլև եվրոպական մի շարք այլ երկրներ, որոնք ռազմական դաշինք էին կնքել Գերմանիայի հետ։ Իսպանիան և մի քանի այլ երկրներ կիսաքողարկված աջակցություն էին ցույց տալիս Հիտլերին։ Հիտլերյան հարձակման սպառնալիքը կախվել էր Անգլիայի վրա։ Եթե Սովետական Միության վրա սկսված արշավանքը հաջող վերջանար, ամ-

բողջ Եվրոպան կարող էր Հիտլերի գարշապարի տակ ընկնել։

Հիտլերականներն արդեն զանազան եղանակներով գովերգում էին «նոր կարգը», որ նրանք հաստատել էին Եվրոպայում։ Ֆաշիստական կամակատարները, ինչպես ամեն տեսակ կվիսլինգներն ու լավալները, արդեն աշխատանքի էին լծվել իրենց գերմանական տիրոջ համար։ Ամենուրեք հիտլերիզմի տիրապետությունը հաստատվում էր ամեն տեսակ դեմոկրատական հաստատությունները ոչնչացնելու և աշխատավոր դասակարգերի ամեն տեսակ քաղաքական իրավունքները լիկվիդացնելու միջոցով, և, դրա հետ միասին, հիտլերականները ստրկացված երկրներից կողոպտում ու քամում էին բոլոր նյութական ռեսուրսները՝ իրենց ավազակային ֆաշիստական հորդաները մատակարարելու և է՛լ ավելի զինելու համար։ Սովետական Միության վրա կատարած արշավանքի առաջին հաջողությունները է՛լ ավելի գլխապտույտ պատճառեցին հիտլերականներին։ Նրանք սկսեցին



է՛լ ավելի բացահայտորեն խոսել ո՛չ միայն Եվրոպայի նկատմամբ իրենց տիրապետության, այլև համաշխարհային տիրապետության իրենց հավակնությունների մասին։ Ամբողջ աշխարհի համար բացահայտ դարձան նրանց վտանգավոր՝ պլանները՝ Եվրոպայի, և ո՛չ միայն Եվրոպայի մյուս ժողովուրդների նկատմամբ գերմանական ռասայի տիրապետության ավանտյուրիստական պլանները։ «Ստոր ռասայի» կարգը դասված մյուս ժողովուրդների նկատմամբ «բարձր ռասայի» տիրապետության գերմանա-ֆաշիստական տեսությունը ուղղակի սպառնալիք դարձավ Եվրոպայի քաղաքակրթության գոյության համար։

Այն երկրներում, ուր ներխուժել էին հիտլերյան բանդաները, ժողովուրդը վատ նախապատրաստված գտնվեց ֆաշիստական զավթիչներին հակահարված տալու համար։ Միայն աստիճանաբար, լավագույն հայրենասեր դեմոկրատների ջանքերի շնորհիվ սկսեցին կազմավորվել ու աճել զավթիչներին դիմադրող դե-

մոկրատական ուժերը։ Բայց նույնիսկ այնպիսի երկրներում, ինչպես Հարավսլավիան, որտեղ ամբողջ ժողովուրդը աջակցություն ցույց տվեց զավթիչների դեմ կազմակերպված ապստամբությանը, ուժեր չկային հիտլերիզմի ռազմական կարողությունը ջախջախելու համար։ Միայն այն ժամանակ, երբ մեր բանակը հարձակման անցավ և սկսեց ջախջախել գերմանական զորքերին, նրանց վրայից պոկելով անպարտելիության պսակը, լայն հնարավորություններ բացվեցին գերմանական իմպերիալիզմի ստրկացրած ժողովուրդների ազատագրման համար։ Առաջ շարժվելով դեպի Արևմուտք, Կարմիր Բանակը ազատագրություն բերեց հարևան երկրներին և Եվրոպայի մյուս ժողովուրդներին։ Սովետական բանակները դաշնակիցների բանակների հետ միասին այժմ հանդես եկան Եվրոպայի երկրների ազատարարների դերում, ներառյալ նաև այն երկրները, որոնք խզեցին դաշինքը Գերմանիայի հետ և կանգնեցին հիտլե-



րիզմի լիկվիդացման համար մարտնչող ժողովուրդների շարքերում։

Եվ այսպես, հիտլերիզմի ճնշումից Եվրոպայի երկրների ազատագրման գործը մեր հաղթական Կարմիր Բանակի պատմության մեջ կմտնի որպես մի փառավոր էջ։ (Բուռն ծափահարություններ)։

Ֆաշիստական Իտալիան առաջինը անցավ Եվրոպայում պատերազմ հրահրած Գերմանիայի կողմը։ ՍՍՌՄ-ի վրա հարձակում գործելու պահին Ռումինիայի, Հունգարիայի, Ֆինլանդիայի կառավարությունները, ռազմական դաշինք կնքելով հիտլերյան Գերմանիայի հետ, իրենց երկրները նետեցին Սովետական Միության դեմ մղվող պատերազմի մեջ։ Գերմանիայի հետ դաշինքի մեջ գտնվեց նաև Բուլղարիան՝ հիտլերյան գործակալներից կազմված իր այն ժամանակվա կառավարությամբ։ Այսպիսով, եթե չխոսենք բացառությունների մասին, ֆաշիստական ռեժիմ ունեցող եվրոպական երկրները երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ իրենց բախտը

կապեցին հիտլերյան Գերմանիայի բախտի հետ։ Դրա համար էլ Գերմանիայի պարտությունը նշանակում էր ո՛չ միայն գերմանական ֆաշիզմի պարտություն։ Դա հասցրեց ֆաշիզմի պարտությանը նաև եվրոպական մյուս երկրներում։

Հետևաբար, մեր հաղթանակի նշանակությունը պետք է դիտել ո՛չ միայն գերմանական ֆաշիզմի ջախջախման լույսի տակ, այլև ամբողջ Եվրոպայում ֆաշիզմի ռազմական ու բարոյա-քաղաքական ջախջախման լույսի տակ։ (Ծափահարություններ)։

Եվրոպայում պատերազմը վերջանալուց հետո դաշնակից տերությունների առաջ կանգնեց արևելքում ճապոնական ագրեսիան լիկվիդացնելու խնդիրը, որպեսզի արագացվի խաղաղության վերահաստատումը ամբողջ աշխարհում։ Սովետական Միությունը չէր կարող հեռու մնալ այդ խնդրի լուծումից, ինչպես ՍՍՌՄ-ի ու նրա դաշնակիցների միջև գոյություն ունեցող փոխադարձ պարտավորությունների ուժով, այնպես էլ նրա համար, որ այդ



էին համառորեն պահանջում մեր անվտանգության շահերը արևելքում։ Մենք բոլորս հիշում ենք, որ Ճապոնիան անցյալում բազմիցս հարձակվել է մեր երկրի վրա և արևելքում մեր պետության համար գոյություն է ունեցել ճապոնական արշավանքի մշտական սպառնալիքը։ Այդ ամենը անխուսափելի է դարձրել, որ Սովետական Միությունը մտնի Ճապոնիայի դեմ մղվող պատերազմի մեջ։ Դժվար չէ համոզվել, որ այն ժամանակվանից, ինչ գերմանական ֆաշիզմը սովետա-գերմանական ռազմաճակատում սկսեց կրել պարտություն պարտության հետևից, այն ժամանակվանից կանխորոշվեց նաև ճապոնական ագրեսիայի վախճանը արևելքում։ Վերջապես հանդես գալով Ճապոնիայի դեմ, Սովետական Միությունը արագացրեց նրա պարտությունը և դրանով իսկ արագացրեց պատերազմի ավարտումը արևելքում։

Ճապոնիան կապիտուլյացվեց դաշնակիցների առաջ, գնալով հիտլերյան Գերմանիայի ճանապարհով։

Խորտակվեցին ո՛չ միայն Եվրոպայում տիրապետություն հաստատելու վերաբերյալ գերմանական իմպերիալիզմի պլանները, այլև Ասիայում տիրապետություն հաստատելու վերաբերյալ ճապոնական իմպերիալիզմի հավակնությունները։ Այնինչ, դեռևս վերջերս ինչպես արևմտյան, այնպես էլ արևելյան ֆաշիստները այդ պլանները դիտում էին սոսկ որպես մի էտապ համաշխարհային տիրապետություն ձեռք բերելու ճանապարհին, իրենց օրինակով ցույց տալով, թե որքան կարճատես ու ավանտյուրիստական են այդպիսի ագրեսիվ դիտավորությունները մեր ժամանակներում։ Ճապոնական իմպերիալիզմի, որպես արևելքում ֆաշիզմի ու ագրեսիայի գլխավոր օջախի, պարտությունը և ճապոնական զավթիչներից Չինաստանի ազատագրումը հսկայական դրական նշանակություն ունեն Ասիայի, և ոչ միայն Ասիայի երկրների դեմոկրատական զարգացման համար։ Այդ հաղթանակն ամրապնդել թելադրում են դեմոկրա-



տական բոլոր երկրների շահերը։ Դրա համար էլ հասկանալի է, որ Սովետական Միությունը այդպիսի մեծ նշանակություն է տալիս Ճապոնիայի կապիտուլյացման պայմանների վրա դաշնակից հիմնական տերությունների պատշաճ վերահսկողություն հաստատելու վերաբերյալ դաշնակիցների միջև վարվող բանակցություններին։ Այդ հարցում դեռևս չեն վերացված ծագած դժվարությունները։ Սակայն Սովետական Միությունը հավատացած է, որ բոլոր խաղաղասեր տերությունները տոգորված են ագրեսիվ Ճապոնիայի դեմ տարած հաղթանակն ամրապնդելու և այդ բանի համար դաշնակից տերությունների միջև համագործակցության համապատասխան պայմաններ ստեղծելու անհրաժեշտության գիտակցությամբ։

Ինչպես Գերմանիան, այնպես էլ Ճապոնիան պետք է անվերապահ կապիտուլյացման ենթարկվեին դաշնակիցների առաջ։ Այսպիսով, անգլո-սովետա-ամերիկյան կոալիցիան հասավ իր առջև դրված նպատակին։

Մեր երկրի մարդիկ այժմ գոհունակությամբ են գիտակցում, որ երկրորդ համաշխարհային պատերազմը հօգուտ դեմոկրատական երկրների հաղթականորեն ավարտելու և առանձնապես ֆաշիզմի ու ագրեսիայի ամենավտանգավոր օջախի՝ հիտլերյան Գերմանիայի լիկվիդացման գործում վճռական տեղը պատկանում է Սովետական Միությանը։ Սովետական ժողովուրդը հիտլերյան Գերմանիայի դեմ մղած իր պատերազմը անվանեց Հայրենական Մեծ պատերազմ։ Սովետական ժողովրդի օրինակով մյուս երկրների հայրենասերները սովորեցին, թե ինչպես պետք է պայքարել իրենց հայրենիքի համար, նրա ազատության և անկախության համար։ Հայտնի է նույնպես, որ սովետական ժողովուրդը ո՛չ միայն ազատագրեց իր երկիրը, այլև հերոսական պայքար էր մղում ամբողջ Եվրոպայում խաղաղությունը և ազատությունը վերահաստատելու համար։

Մեկ տարի առաջ ընկեր Ստալինն ասում էր.

«Այժմ ամենքը խոստովանում են,



որ սովետական ժողովուրդը իր անձնազոհ պայքարով Եվրոպայի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից։ Այդ է սովետական ժողովրդի մեծ ծառայությունը մարդկության պատմության առաջ»։ (Երկարատև ծափահարություններ)։

## II.

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԵՎ ԽԱՂԱՂԱՍԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՇԱՀԵՐԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմը առաջին համաշխարհային պատերազմից տարբերվում էր շատ տեսակետներից ու նախ և առաջ այդ պատերազմին ժողովուրդների ցուցաբերած մասնակցության մասշտաբով, ինչպես նաև պատերազմի պատճառած մարդկային զոհերի ու նյութական վնասի քանակով։ Երկրագնդի ազգաբնակության շուրջ հինգերորդ մասը այս կամ այն չափով մասնակցում էր վերջին համաշխարհային պատերազմին։ Պա-

տերազմող երկու լագերներում մոբիլիզացվածների թիվը հասավ ավելի քան 110 միլիոն մարդու: Համարյա հնարավոր չէ անվանել մի երկիր, որն այդ տարիներին իրոք չեզոք լինել: Թույլ տալով երկրորդ համաշխարհային պատերազմը, այսինքն՝ ժամանակին միջոցներ չգործադրելով իր մասշտաբով չտեսնված այդ պատերազմը հրահրող ֆաշիզմի ագրեսիվ ուժերի դեմ, մարդկությունը մարդկային զոհերի և շատ պետությունների ավերման գնով անչափ բարձր վճարեց:

Պատերազմը փաթաթվեց մեր ժողովրդի վզին, որը ի պատասխան հարձակման Հայրենական Մեծ պատերազմ հայտարարեց: Հիտլերյան Գերմանիան Սովետական Միության վրա հարձակվեց ոչ միայն մեր տերիտորիան զավթելու և սովետական պետությունը ոչնչացնելու նպատակով: Հիտլերիզմը ազդարարեց, որ իր նպատակն է՝ բնաջնջել ռուսներին: Ընդհուպ մինչև այն մոմենտը, երբ ռուս ժողովուրդը, ինչպես



և Սովետական Միության մյուս ժողովուրդները, ամբողջովին վերակառուցվեցին Ստալինյան «ամեն ինչ պատերազմի համար» կոչով, և երբ նրանք, վերջապես, ջարդեցին գերմանական բանակի ողնաշարը, գազազած հիտլերականները ոչ մի բանի առջև կանգ չէին առնում զավթած տերիտորիաներում իրենց մարդատյաց նպատակներն իրագործելու համար: Այդ բանը մոռանալը հանցանք կլիներ զոհված միլիոնավոր միանգամայն անմեղ մարդկանց հիշատակի հանդեպ, նրանց որբացած ընտանիքների, ամբողջ ժողովրդի հանդեպ: Չի կարելի մոռանալ նաև այն, թե ինչպիսի հսկայական նյութական վնաս հասցրին մեզ գերմանական զավթիչները և նրանց դաշնակիցները, որոնք շատ ամիսների ընթացքում ավազակություն էին անում սովետական տերիտորիայում: Այդ ամենի համար պատասխան պետք է տան նախ և առաջ պատերազմի գլխավոր հանցագործները:

Գերմանա-ֆաշիստական օկու-

պատմները ամբողջովին կամ մա-սամբ ավերեցին ու հրկիզեցին 1.710 քաղաք և ավելի քան 70 հազար գյուղ ու գյուղակ, այրեցին և ավերեցին ավելի քան 6 միլիոն շենք և օթևանից զրկեցին մոտ 25 միլիոն մարդ։ Ավերված և առավել տուժած քաղաքների մեջ կան երկրի խոշորագույն արդյունաբերական ու կուլտուրական կենտրոններ՝ Ստալինգրադը, Սևաստոպոլը, Լենինգրադը, Կիևը, Մինսկը, Օդեսան, Սմոլենսկը, Խարկովը, Վորոնեժը, Դոնի Ռոստովը և ուրիշ շատ քաղաքներ։ Հիտլերականներն ավերեցին և վնասեցին 31.850 արդյունաբերական ձեռնարկություն, որտեղ զբաղված էր մոտ 4 միլիոն բանվոր ու ծառայող։ Հիտլերականներն ավերեցին և կողոպտեցին 98 հազար կոլխոզ, այդ թվում Ուկրաինայի և Բելոռուսիայի կոլխոզների մեծ մասը։ Նրանք մորթեցին, խլեցին և Գերմանիա քշեցին 7 միլիոն ձի, 17 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուն, մի քանի տասնյակ միլիոն խոզ և ոչխար։ Արտակարգ Պե-



տական Հանձնաժողովը պարզեց, որ միայն ժողովրդական տնտեսությանը և մեր քաղաքացիներին պատճառած վնասը կազմում է 679 միլիարդ ռուբլի (պետական գներով)։

Մենք չենք կարող մոռանալ այդ բոլորը և պետք է պատերազմ հրահրած երկրներից պահանջենք թեկուզ մասամբ հատուցել պատճառած վնասը։ Չի կարելի վիճարկել սովետական ժողովրդի այդ ցանկության արդարացիությունը։ Չի կարելի նաև անտեսել, որ երեք տերությունների Բեռլինի կոնֆերանսի որոշումները Գերմանիայից պահանջվելիք ռեպարացիաների մասին դեռևս բավարար ընթացք չեն ստացել։

Սակայն մեր մեջ չկան պարտված ժողովուրդների նկատմամբ վրեժխնդրության քաղաքականության կողմնակիցներ։ Ընկեր Ստալինը շատ անգամ մատնանշել է, որ վրիժառության զգացմունքը, ինչպես և վիրավորանքի համար հատուցման զգացմունքը վատ խորհրդատուներ են քաղաքականության մեջ և ժողովուրդների փոխհարաբերու-

թյուններում։ Մենք պարտված ժողովուրդների նկատմամբ պետք է ղեկավարվենք ոչ թե վրիժառության զգացմունքներով, այլ նրանով, որ դժվարացնենք նոր ագրեսիայի առաջացումը և որ հնարավոր նոր ագրեսորը գտնվի առավելագույն մեկուսացման վիճակում ժողովուրդների մեջ։ Մեզ պետք է ղեկավարեն ոչ թե անցյալի վիրավորանքները, այլ հետպատերազմյան ժամանակաշրջանում ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը պահպանելու շահերը։

Անտարակույս, հաստատուն խաղաղություն ապահովելու շահերը պահանջում են, որ խաղաղասեր ժողովուրդների տնօրինման անհրաժեշտ զինված ուժ։ Այդ, համենայն դեպս, վերաբերում է այն երկրներին, որոնք գլխավոր պատասխանատվություն են կրում խաղաղությունն ապահովելու համար։ Սակայն խաղաղությունը պահպանելու շահերը ոչ մի առնչություն չունեն մեծ տերությունների սպառազինության այն մրցավազքի քաղաքականության հետ, որ



արտասահմանում քարոզում են իմպերիալիզմի քաղաքականության առանձնապես փութաջան որոշ կողմնակիցները։ Այդ կապակցությամբ պետք է խոսել ատոմային էներգիայի հայտնագործության և ատոմային ռումբի մասին, որի գործադրությունը ճապոնիայի դեմ մղված պատերազմում ցույց տվեց նրա հսկայական ավերիչ ուժը։ Սակայն ատոմային էներգիան դեռ չի ստուգվել ագրեսիան կանխելու կամ խաղաղությունը պահպանելու համար։ Մյուս կողմից, ներկայումս չեն կարող լինել մեծ մասշտաբի տեխնիկական այնպիսի գաղտնիքներ, որոնք կարողանային մնալ որպես որևէ մեկ երկրի կամ երկրների մեկ նեղ խմբի սեփականություն։ Ուստի ատոմային էներգիայի գյուտը չպետք է գայթակղություն խրախուսեր ոչ այդ գյուտն ուժերի արտաքին քաղաքական խաղի ասպարեզում օգտագործելու նկատմամբ, ոչ էլ անհոգություն խրախուսեր խաղաղասեր ժողովուրդների ապագայի նկատմամբ։

Քիչ աղմուկ չի բարձրացնում նաև

անհրաժեշտ է աջակցել դեմոկրատական հիմունքների ամրապնդմանն այդ պետություններում։

Չի կարելի չնշել, որ պատերազմը փոքր փոփոխություններ չառաջացրեց նաև դաշնակից երկրների լագերում։ Որպես կանոն, այդտեղ ռեակցիոն ուժերը զգալի չափով ետ են մղվել իրենց նախկին դիրքերից, ճանապարհ հարթելով հին և նոր դեմոկրատական պարտիաների համար։ Մի շարք եվրոպական երկրներում անց են կացվել սոցիալական այնպիսի արմատական ռեֆորմներ, ինչպես իր դարն ապրած կալվածատիրական հողատիրության լիկվիդացիան և հողի հանձնումը սակավահող գյուղացիներին, մի հանգամանք, որը խարխլում է ռեակցիոն-ֆաշիստական ուժերի երբեմնի հենարանը և խթանում է դեմոկրատական ու սոցիալիստական շարժման վերելքն այդ երկրներում։ Մի քանի պետություններում այժմ օրակարգ են մտցվել տնտեսական այնպիսի կարևոր ռեֆորմներ, ինչպես խոշոր արդյունա-



բերության ազգայնացումը, ութժամյա աշխատանքային օր, և այլն, որը նոր ոգի և վստահություն է մտցնում դեմոկրատական շարժման աճող շարքերի մեջ Եվրոպայում և Եվրոպայի սահմաններից դուրս։ Ռեակցիոն մամուլի մի քանի օրգաններ փորձեր են անում այդ համարձակ դեմոկրատական ռեֆորմների անցկացումը վերագրել գլխավորապես Սովետական Միության աճած ազդեցությանը։ Նմանօրինակ փաստարկումների սնանկությունն ակներև է, քանի որ բոլորին հայտնի է, որ այդ տեսակ պրոբլեմները Եվրոպայի առաջավոր երկրներում դեռ առաջ էլ լուծվում էին հաջողությամբ։

Այդ չի նշանակում, թե ֆաշիզմի ուժերը վերջնականապես լիկվիդացվել են և կարելի է այլևս հաշվի չառնել դրանք։ Դուք բոլորդ էլ կարդացել եք երեք տերությունների Ղրիմի դեկլարացիան Եվրոպայի ազատագրման մասին, որի մեջ ասված է՝ «Եվրոպայում կարգ

և կանոնի հաստատմանը և ազգային-տնտեսական կյանքի վերականգնմանը պետք է հասնել այնպիսի ճանապարհով, որը ազատագրված ժողովուրդներին հնարավորություն կտա ոչնչացնելու նացիզմի ու ֆաշիզմի վերջին հետքերը և ստեղծելու դեմոկրատական հաստատություններ նրանց սեփական ընտրությամբ։ Դեռ շատ բան պետք է անել Ղրիմի Դեկլարացիայի ճիշտ կատարումն ապահովելու համար։ Սակայն տարակույս չկա, որ ֆաշիզմի դեմ մղված պատերազմը, որքան էլ նա բացասական հետևանքներ ունենա, ավարտվելով հաղթանակով, շատ կողմերից նպաստեց այն բանին, որ Եվրոպայում մաքրվի քաղաքական օդը և նոր ուղիներ բացվեն հակաֆաշիստական ուժերի վերածննդի ու զարգացման համար, ինչպես երբեք չի եղել անցյալում։ Նման դրությունը, անտարակույս, համապատասխանում է խաղաղասեր պետությունների շահերին և պետք է ցանկալ, որ Եվրոպայի ժողովուրդնե-



րի մեջ է՛լ ավելի ամրանա «նացիզմի ու ֆաշիզմի վերջին հետքերը ոչնչացնելու» անհրաժեշտության գիտակցությունը։

Սովետական Միությունը միշտ հավատարիմ է եղել բոլոր խաղաղասեր պետությունների միջև նորմալ հարաբերություններն ամրապնդելու քաղաքականությանը։ Պատերազմի տարիներին Սովետական Միությունը բարեկամական հարաբերություններ հաստատեց Մեծ Բրիտանիայի և Միացյալ Նահանգների հետ, Ֆրանսիայի և Չինաստանի հետ, Լեհաստանի, Չեխոսլովակիայի ու Հարավսլավիայի հետ և համարյա այդ բոլոր երկրների հետ այժմ ունի դաշինքի և փոխադարձ օգնության երկարատև պայմանագրեր ընդդեմ հնարավոր նոր ագրեսիայի այն պետությունների կողմից, որոնք գլխավոր ագրեսորներն էին վերջին համաշխարհային պատերազմում։ Մեր կողմից կատարվում է ամեն ինչ՝ հարաբերությունները նորմալացնելու և լավ հարաբերություններ հաստատելու

համար մյուս երկրների հետ, որոնք հրաժարվել են թշնամանքի ու անվստահության քաղաքականությունից Սովետական Միության հանդեպ։ Դրան է ծառայում նաև տարերկրյա պետությունների ավելի ու ավելի մեծ շրջանի հետ մեր երկրի առևտրա-տնտեսական հարաբերությունների զարգացումը։ Ուժեղանում է նաև կուլտուրական կապը նրանց հետ։

Այժմ տեղի է ունենում պատերազմի ժամանակ ստեղծված անգլո-սովետա-ամերիկյան հակահիտլերյան կոալիցիայի ամրության ստուգումը։ Արդյոք այդ նոր կոալիցիան նույնքան ուժեղ և ընդունակ կլինի՞ համատեղ որոշումներ կայացնելու նոր պայմաններում, երբ ծագում են հետպատերազմյան ժամանակաշրջանի նորանոր պրոբլեմներ։ Հինգ մինիստրների Լոնդոնի խորհրդակցության անհաջողությունը որոշ նախազգուշացում հանդիսացավ այդ մասին։ Բայց անգլո-սովետա-ամերիկյան կոալիցիայում դժվարություններ եղել են նաև պատերազմի



ժամանակ։ Սակայն, թեև ոչ միշտ միանգամից, երբեք տերությունների կոալիցիան կարողանում էր հերթական խնդիրների ճիշտ լուծումը գտնել հօգուտ մեծ ու փոքր տերությունների ամբողջ հակահիտլերյան կոալիցիայի շահերի, հաշվի առնելով նաև դեմոկրատական մեծ տերությունների համագործակցությունն է՛լ ավելի ամրապնդելու անհրաժեշտությունը։

Այս տարի ստեղծվեց, վերջապես, «Միավորված Ազգեր» միջազգային նոր կազմակերպությունը։ Նա ստեղծվեց անգլո-սովետա-ամերիկյան կոալիցիայի նախաձեռնությամբ, որը դրանով իսկ ստանձնեց նրա ապագա աշխատանքի արդյունքների գլխավոր պատասխանատվությունը։ Մեզ համար պարզ է, որ «Միավորված Ազգեր» կազմակերպությունը չպետք է նմանի Ազգերի Լիգային, որը միանգամայն անընդունակ գտնվեց ագրեսիային հակազդելու և ծագած ագրեսիային դիմադրող ուժերը կազմակերպելու

հարցերում։ Նոր կազմակերպությունը չպետք է նաև գործիք դառնա որևէ մեծ տերության ձեռքում, որովհետև ընդհանուր համաշխարհային գործերում որևէ մեկ պետության կողմից ղեկավար դեր խաղալու հավակնությունը նույնքան սնանկ է, որքան և համաշխարհային տիրապետություն հաստատելու հավակնությունը։ Միայն այն տերությունների համատեղ ջանքերը, որոնք իրենց ուսերի վրա են կրել պատերազմի ծանրությունը և ապահովել են դեմոկրատական երկրների հաղթանակը ֆաշիզմի դեմ, միայն այդպիսի համագործակցությունը կարող է նպաստել միջազգային նոր կազմակերպության աշխատանքի հաջողություններին՝ հօգուտ երկարատև խաղաղության։ Դրա համար բավական չէ բարի ցանկություններ արտահայտելը։ Դեռ պետք է ապացուցել հօգուտ բոլոր խաղաղասեր պետությունների շահերի այդ տեսակ համագործակցություն հաստատելու ընդունակությունը։ Սովետական Միությունը վստահելի պատվար է եղել



և կլինի ժողովուրդների խաղաղության ու անվտանգության պաշտպանելու գործում և պատրաստ է այդ ապացուցել ոչ թե խոսքով, այլ գործով։ (Երկարատև ծափահարություններ)։

III.

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Գերմանիայի դեմ մղված քառամյա պատերազմը սովետական պետության բոլոր ուժերի քննությունն էր։ Սովետական Միությունը պատվով բռնեց այդ քննությունը։ Նորից և նորից իրականացան Մեծ, անմահ Լենինի խոսքերը.

«Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորների և գյուղացիների մեծ մասը իմացել, զգացել ու տեսել է, որ իրենք պաշտպանում են իրենց, Սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը նրանց ու նրանց ե-

ռեխաներին հնարավորություն կապահովի օգտվելու կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր արդյունքներից»: (Ծափահարություններ):

Կարմիր Բանակը պատերազմից դուրս եկավ հաղթողի փառքով: Նա ամրապնդվեց որպես զինված ուժ և է՛լ ավելի ուժեղ դարձավ իր սովետական մարտական ոգով: Նրա շարքերից այժմ վերադառնում են տուն, խաղաղ աշխատանքի միլիոնավոր մարդիկ, որոնք այնպես անհրաժեշտ են կոլխոզներին, ֆաբրիկաներին, գործարաններին ու մեր ամբողջ Հայրենիքին, որն այժմ ձեռնամուխ է եղել սոցիալիստական շինարարության նոր վերելքի մեծ խնդիրների իրագործմանը: Սովետական ժողովուրդն այժմ համախմբված է իր պարտիայի շուրջը, ինչպես առաջ երբեք, և կազմակերպված շարքերով առաջ է ընթանում Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ: Այդ մեր երջանկությունն է, որ պատերազմի դժվարին տարիներին Կարմիր Բանակն ու սովետա-



կան ժողովրդին առաջ էր տանում Սովետական Միության իմաստուն և փորձված առաջնորդ Մեծ Ստալինը: (Բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում): Գեներալիսիմուս Ստալինի անվան հետ մեկտեղ մեր երկրի պատմության և համաշխարհային պատմության մեջ կմտնեն մեր բանակի տարած պանծալի հաղթանակները: (Բուռն, երկարատև ծափահարություններ): Ստալինի, մեծ առաջնորդի և կազմակերպչի ղեկավարությամբ մենք այժմ ձեռնամուխ ենք եղել խաղաղ շինարարության, որպեսզի հասնենք սոցիալիստական հասարակության ուժերի լիակատար ծաղկման և արդարացնենք ամբողջ աշխարհում գտնվող մեր բարեկամների լավագույն հույսերը: (Երկարատև ծափահարություններ):

Բոլորն էլ գիտեն, թե ինչպես մեծ չափով աճել է ՍՍՌՄ-ի միջազգային հեղինակությունը: Դա հնարավոր դարձավ մեր երկրի ռազմական, տնտեսական և քաղաքական հաջողությունների շնորհիվ: Մեկ տարի

առաջ ընկեր Ստալինը այդ բանը արտահայտեց հետևյալ խոսքերով.

«Ճիշտ այնպես, ինչպես Կարմիր Բանակը մեկ ընդդեմ մեկի մղվող երկարատև ու ծանր պայքարում ռազմական հաղթանակ տարավ ֆաշիստական զորքերի դեմ, սովետական թիկունքի աշխատավորները հիտլերյան Գերմանիայի ու նրա գործակիցների դեմ իրենց մենամարտում տնտեսական հաղթանակ տարան թշնամու նկատմամբ»:

Ընկեր Ստալինը ասաց նույնպես՝ «Պատերազմի ընթացքում հիտլերականները կրեցին ոչ միայն ռազմական, այլև բարոյական-քաղաքական պարտություն»: Պատերազմը ամենքին ցույց տվեց, թե ինչպես աճեց ու ամրապնդվեց մեր երկիրը ռազմա-տնտեսական տեսակետից: Պատերազմը ոչ պակաս չափով ցույց տվեց նաև այն, թե Սովետական Միությունը բարոյա-քաղաքական տեսակետից որքան շատ է աճել մյուս ժողովուրդների աչքում:

Մենք պատերազմի առաջին տարիներին կրեցինք տնտեսական բա-



ցառիկ դժվարություններ, և այնուամենայնիվ, մեր երկիրը ընդունակ գտնվեց մեր հերոսական բանակին ապահովելու անհրաժեշտ ամեն ինչով, այդ թվում առաջնակարգ սպառազինությամբ, որն իր որակով գերազանցում էր թշնամու զենքին: Կրելով պատերազմի ժամանակվա զրկանքներ ու նեղություններ, սովետական մարդիկ աշխատում էին առանց ձեռքները ծալելու, և մենք պետք է արժանին հատուցենք թիկունքի մեր աշխատողներին, հատկապես սովետական անձնազոհ կնոջը և հայրենիքին անհունորեն նվիրված սովետական երիտասարդությանը: (Երկարատև ծափահարություններ): Դրա շնորհիվ մեզ հաջողվեց պատերազմի դժվարին ժամանակ պահպանել մեր ժողովրդի կենսական մակարդակը:

Բանվոր դասակարգի միլիոնավոր զանգվածներ բանակ կանչվեցին և կռվում էին ռազմաճակատում: Սակայն գործարաններն ու ֆաբրիկաները շարունակում էին աշխատել, համալրվելով նոր կադրերով, հատկա-

պես կանանց ու երիտասարդության հաշվին։ Պատերազմի տարիներին կառուցվեցին ոչ սակավաթիվ նոր գործարաններ, էլեկտրակայաններ, հանքահորեր, երկաթուղագծեր, որ կատարվում էր գլխավորապես երկրի արևելյան շրջաններում։ Սոցիալիստական մրցությունը և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նրա նոր ձևերը շարունակ մընում էին առաջավոր բանվորների և ամբողջ բանվոր դասակարգի հոգատարության կենտրոնում։ Պրոֆեսիոնալ միությունները և բանվորական մյուս կազմակերպությունները կազմակերպչական ու դաստիարակչական լարված աշխատանք էին կատարում բանվորական մասսաների մեջ։ Բանվորներն ու բանվորուհիներն աշխատում էին ավելի շատ, քան նախապատերազմյան շրջանում։ Դրա հետևանքով շատ դժվարություններ հաղթահարվեցին։

Կոլխոզային գյուղացիությունը պատերազմի տարիներին ցույց տվեց իր քաղաքական գիտակցությունը և կոլխոզային կազմակերպվածությունը



գյուղատնտեսության մեջ։ Գյուղացիներն ու գեղջկուհիները այժմ լավ հասկացան սոցիալիստական մրցության նշանակությունը կոլխոզներում և շատ բան արին գերմանական օկուպանտների կողմից մեր երկրի տերիտորիայի մի մասի ժամանակավոր զավթումով գյուղատնտեսությանը պատճառած հսկայական կորուստը վերացնելու համար։ Այս բոլորը մեզ հնարավորություն տվեց պատերազմի տարիներն անցկացնել՝ ունենալով հացի ապահով պաշարներ և արդյունաբերության անհրաժեշտ ձեռնարկություններն ապահովել գյուղատնտեսական հումքով։ Այդ խնդրից գլուխ հանելը հեշտ չէր մանավանդ եթե վերհիշենք, որ մեր Կարմիր Բանակի շարքերը մեծ մասամբ կազմված են կոլխոզնիկներից։

Պատերազմի ժամանակ մենք կարողացանք կատարել ռազմաճակատի ու թիկունքի խնդիրները նաև նրա համար, որ սովետական ինտելիգենցիան ևս կատարեց իր պարտքը Հայրենիքի հանդեպ։ Պատերազմը

ակնառու կերպով ցույց տվեց, թե ինչ է դարձել ինտելիգենցիան սովետական իշխանության տարիներին: Արդեն խոսակցություններ չեն լսվում հին և նոր ինտելիգենցիայի մասին: Ինքը կյանքն է վերացրել այդ պրոբլեմը: Ինտելիգենցիայի ճնշող մեծամասնությունը ազնվորեն ու հաջողությամբ կատարում է իր բարձր պարտավորությունները տնտեսական աշխատանքը կազմակերպելու, մասնագետների նոր կադրեր դաստիարակելու, բնակչության առողջությունը պահպանելու և կուլտուրական մակարդակը բարձրացնելու գործում: Մենք այժմ մեծ գոհունակությամբ կարող ենք ասել, որ սովետական ինտելիգենցիան արժանի է իր ժողովրդին և հավատարմորեն ծառայում է իր Հայրենիքին: (Ծափահարություններ):

Պատերազմի տարիներին ամրապնդվեց Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը: Մեր բազմազգ պետությունը, լեզվի, կենցաղի, կուլտուրայի ու պատմության իր տարբերություններով, դար-



ձավ է՛լ ավելի ամրակուռ, սովետական ժողովուրդները է՛լ ավելի մերձեցան իրար հետ: Ուրիշ ոչ մի բազմազգ պետություն չէր դիմանա այն փորձություններին, որոնցով անցանք մենք պատերազմի տարիներին: Միայն մեր պետությունը, որտեղ տեղ չունի մարդու շահագործումը մարդու կողմից, որտեղ չկան միմյանց հակադիր դասակարգեր, իսկ բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան որպես իրավահավասար քաղաքացիներ կառավարում են ինչպես տեղական գործերը, այնպես էլ պետությունը,— միայն այդպիսի պետությունը, և ոչ թե հին ազնվականական-վաճառականական Ռուսաստանը, կարող էր դիմանալ գերմանացիների արշավանքին 1941—1942 ծանր տարիներին, իր ուժերով ջախջախել ընտրված թշնամուն, նրան դուրս շպրտել իր տերիտորիայի սահմաններից և, բացի դրանից, հզոր օգնություն ցույց տալ մյուս ժողովուրդներին՝ օտարերկրյա ստրկացնողներից նրանց ազատագրման գործում: Մեր երկրում այժմ

չկան ճնշված կամ անիրավահավասար ժողովուրդներ, որոնք դեռևս վերջերս, ցարիզմի ռեժիմի ժամանակ, գտնվում էին գաղութների և կիսագաղութների վիճակում։ Սովետական պետության մեջ ճանաչված է բոլոր ժողովուրդների անկախության և ազգային ազատ զարգացման իրավունքը, բոլոր ժողովուրդները դաստիարակվում են բարեկամության և միմյանց հարգելու, ինչպես նաև յուրաքանչյուր ժողովրդի ծառայությունները ճանաչելու ոգով, համապատասխան իր ազգային կուլտուրայի զարգացման և սովետական ամբողջ պետության հետագա վերելքի գործում նրա գործադրած ջանքերի։

Մեր պրոֆմիութենական, արտադրական, կուլտուրական, սպորտային և այլ բանվորական անհամար կազմակերպությունների ակտիվության մեջ, Սովետական Միության ամբողջ լայնածավալ տերիտորիայում բազմամիլիոն սովետական գյուղացիությանը միացնող կոլխոզների ստեղծման մեջ, ֆաբրիկաներում և գործա-



րաններում, կոլխոզներում ու սովխոզներում, հանքահորերում և երկաթուղիներում սոցիալիստական մրցության անշեղ աճման գործում — այս բոլորի մեջ երևում է իսկական ժողովրդական դեմոկրատիզմի ծաղկումը, որը մեզ ծանոթ չի եղել հին ժամանակ և որը չի կարող լինել ճնշողների և ճնշվածների դասակարգերի բաժանված ոչ մի այլ պետության մեջ, բաժանում, որին Սովետական իշխանությունը վաղուց արդեն վերջ է դրել մեր երկրում։ Մեր երկրի կուլտուրական կյանքի արագ աճման և այն փաստի մեջ, որ այժմ ինտելիգենցիան որպես առաջավոր և առավել կուլտուրական մասը, միաձուլվել է իր ժողովրդի հետ, դրանով իսկ սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը բարձրացնելով է՛լ ավելի բարձր աստիճանի — այս բոլորի մեջ չի կարելի չտեսնել մեզ մեր երկրի ապագայի վերաբերմամբ նոր հույսերով ու հավատով թևավորող սովետական դեմոկրատիզմի նոր վերելքը։ Այն, որ սովետները բոլոր ժողովուրդ-

ների համար ապահովեցին ազգային կուլտուրայի անշեղ վերելք, ակտիվ հոգատարություն ազգային տաղանդների դաստիարակման նկատմամբ և աճող բարեկամություն ու եղբայրական փոխադարձ օգնություն սովետական իրավահավասար ժողովուրդների միջև, մի բան, որ չկար հին Ռուսաստանում և որ դեռևս չկա մյուս երկրներում ո՛չ միապետական, ոչ էլ ռեսպուբլիկական ռեժիմների օրով,—այդ բանում մենք տեսնում ենք սովետական դեմոկրատիայի ամենահաղթ ուժը, նրա մեծ նշանակությունը ժողովուրդների իրոք պրոգրեսիվ զարգացման համար։ Սովետական դեմոկրատիզմի մոբիլիզացնող ուժը և սխրագործությունների ոգեշնչող սովետական հայրենասիրությունը առանձնապես երևան եկան պատերազմի տարիներին։ Սովետական մարդիկ երջանիկ են, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ, որը մեր երկիրը փրկեց երկրորդական պետությունների շարքն իջեցվելուց, ազատագրվեցին ազնվականական-բուրժուական-կալվածատի-



րական ռեժիմի կողմից կաշկանդված այն ժողովուրդների ուժերը, որոնք Սովետների իշխանության հիման վրա ստացան զարգացման առաջներում չտեսնված հնարավորություններ։ Ահա թե ինչու ֆաշիզմի դեմ մեր տարած հաղթանակում մենք միաժամանակ տեսնում ենք սովետական դեմոկրատիայի մեծ հաղթանակը։

Պատերազմի ընթացքում սովետական մարդիկ պետք է շատ հեռու գնային իրենց երկրի սահմաններից։ Ֆաշիզմի համառ դիմադրությունը մեր զորքերին ստիպեց մտնելու օտարերկրյա մի շարք պետությունների սահմանները, մոտիկից ծանոթանալու նրանց գյուղերի ու քաղաքների կյանքին, և արևմուտքում հասնելու մինչև այնպիսի մայրաքաղաքներ, ինչպես Վիեննան, Բուդապեշտը, Բեռլինը։ Այդ բոլոր պետություններում, այդ թվում նաև այն պետություններում, որոնք երեկ ֆաշիզմի կողմն էին, սովետական մարդիկ հեշտությամբ ընդհանուր լեզու գտան աշխատավոր դասակարգերի

և դեմոկրատական շրջանների հետ։ Սովետական մարդկանցից չէր կարելի, իհարկե, սպասել, որ նրանք իրենց բարեկամներ համարեին երեկվա թշնամիներին՝ ֆաշիզմի ծառաների լագերից և հասարակության այն վերնախավերից, որոնց ֆաշիստական իշխանությունները օժանդակում էին։ Իհարկե, մյուս ժողովուրդների կենցաղի հետ ծանոթանալը իր օգուտը կբերի մեր մարդկանց և կընդլայնի նրանց պատկերացումները։ Բայց հետաքրքրական է, որ սովետական մարդիկ տուն են վերադառնում իրենց Հայրենիքին և սովետական իշխանությանը նվիրվածության է՛լ ավելի ջերմ զգացմունքով։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետական իշխանությունը ուժեղ է ժողովրդի հետ ունեցած իր մոտիկությամբ։ Ի տարբերություն պառլամենտական դեմոկրատիայից, սովետական դեմոկրատիան կրում է իրոք ժողովրդական բնույթ։ Սովետական պետությունը, որպես նոր տիպի պետություն, դրա համար էլ



յուրահատուկ են այնպիսի խնդիրներ, որոնք յուրահատուկ չեն հին տիպի պետություններին։ Այսպես, սովետական պետության պարտականությունների մեջ մտնում են ամբողջ աշխարհում խաղաղության շահերը պաշտպանելու ոգով, ժողովուրդների միջև բարեկամություն և համագործակցություն հաստատելու ոգով ժողովրդին քաղաքականապես դաստիարակելու խնդիրները, որ ոչ միայն չի բացառում, այլ, ընդհակառակն, ենթադրում է նոր ագրեսիայի նախապատրաստման և ֆաշիզմի վերածնման ամեն տեսակ փորձերը մերկացնելու անհրաժեշտությունը, որի մասին չի կարելի մոռանալ նաև հետպատերազմյան տարիներին։ Սովետական Կոնստիտուցիայի համաձայն հանցագործություն է ռասաների և ազգերի միջև թշնամություն, հակասեմիտիզմը և այլն, քարոզելը, ինչպես մեր մամուլում չի թույլատրվում սպանությունների, կողոպուտների և մարդկանց նկատմամբ բռնություն գործադրելու գովերգումը։ Նման սահ-

*մանափակումները» սովետական դեմոկրատիայի պայմաններում նույնքան բնական են, որքան դժբախտաբար, մի քանի պետությունների համար բնական են հանդիսանում հենց հակառակ բաները։ Մի քանի երկրներում խոսքի և մամուլի ազատությունը դեռևս ըմբռնվում է այնպես, որ ֆաշիզմի վարձկան ծառաները հարկադրված չեն լինում նույնիսկ դիմակներ հագնելու ագրեսիայի և ֆաշիզմի սանձազերծ պրոպագանդա մղելու համար, թեև աշխարհի բոլոր մասերի ժողովուրդները իրենց արյամբ ու զրկանքներով վիթխարի գին են հատուցել համաշխարհային ագրեսիայի ու ֆաշիզմի մինչ այդ թույլ տված սանձարձակության համար։ Ամեն մի պետություն ի վիճակի չէ իր վրա վերցնելու ժողովրդի քաղաքական դաստիարակության խնդիրը, իսկ երբ ֆաշիստական պետությունները ձեռնամուխ էին լինում դրան, ապա ուրիշ բան չէր ստացվում, բացի բռնությունից ժողովրդի հոգևոր կյանքի, կուլտուրայի ու իրավունք-*



*ների վրա։ Սովետական դեմոկրատիայի առավելությունները Սովետական Միությունը առանձնապես ակնառու կերպով ապացուցեց պատերազմի տարիներին։ ՍՍՌՄ-ն անցավ պատերազմական փորձությունների կրակի միջով և էլ ավելի ամրապնդվեց որպես իսկական ժողովրդական պետություն։ Ինչպես հայտնի է, մեր երկրում ժողովրդի քաղաքական դաստիարակության գործի համար հատուկ պատասխանատվություն է կրում բոլշևիկյան պարտիան։ Այդ գործում մեր հաջողությունների համար մենք պարտական ենք ամենից առաջ մեր մեծ պարտիային։ Ահա թե ինչու սովետական ժողովուրդը խոր իմաստ է դնում բոլշևիկյան պարտիայի առաջնորդի մասին խոսելիս, երախտագիտությամբ և մեծ սիրով ասելով. «Մեր ուսուցիչ, մեր հայր, մեր առաջնորդ ընկեր Ստալին»։* (Բուռն, երկարատև օվացիա։ Բոլորը ոտքի են կանգնում)։

Մենք մոտենում ենք ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի նոր ընտրություններին։ Նոր ընդհանուր ընտրությունները անց են կացվելու Հայրենական մեծ պատերազմում սովետական պետության կրած բոլոր փորձություններից հետո։ Մեր ժողովուրդը քվեատուփերին կմոտենա այս տարիների ընթացքում կուտակած քաղաքական վիթխարի փորձով, երկար խորհրդածած իր հայրենիքի վիճակի, Եվրոպայի և ամբողջ աշխարհի իրադարձությունների մասին։ Բոլշևիկյան պարտիան սովետական անպարտիական ակտիվի լայն շրջանների հետ միասին պատրաստվում է այդ ընտրություններին, նրանց մեջ տեսնելով սովետական դեմոկրատիայի կարևորագույն արտահայտումը և մեր ժողովրդի համախմբման ու սովետական պետության հետագա ամրապնդման ևս մեկ հզոր միջոցը։



# IV

## ԱՆՑՈՒՄԸ ԴԵՊԻ ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՄԵՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Մեր երկիրն անցել է խաղաղ շինարարության։ Ամբողջ ժողովրդի առջև կանգնել են նոր մեծ խնդիրներ։

Մենք, իհարկե, անհրաժեշտ ուշադրություն կնվիրենք նաև ՍՍՌՄ-ի կազմի մեջ մտած նոր տերիտորիաներին։ Ինչպես հայտնի է, մեր երկիրը ներխուժած թշնամին մեզ խանգարեց պատշաճ ուշադրություն նվիրելու Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի կառուցմանը, որոնք պատերազմից առաջ շատ քիչ ժամանակով էին գտնվում Սովետական Միության կազմի մեջ։ Այժմ, Լեհաստանի հետ կնքված պայմանագրով, սահմանվել է սովետա-լեհական նոր սահման։ Դրա հետևանքով այն բոլոր տերիտորիաները, որտեղ բելոռուսներ են բնակվում, վերջնականապես վերամիացվել, կազմել են միասնական Սովետական Բե-

Բելոռուսիա, որը կարող է վստահ քայլերով առաջ գնալ իր ազգային ապագա զարգացման ճանապարհով: Ինչպես հայտնի է, Չեխոսլովակիայի հետ կնքված պայմանագրով Անդրկարպատյան Ուկրաինան վերջապես մտավ մեր պետության կազմի մեջ, և այժմ Սովետական Ուկրաինան ամբողջովին միավորում է ուկրաինական բոլոր տերիտորիաները, որի մասին դարեր շարունակ երազել են մեր ուկրաինացի եղբայրները: Ռումինիայի հետ կնքված պայմանագրով, Սովետական Մոլդավիան նույնպես ամբողջովին միավորել է մոլդավացի բնակչություն ունեցող տերիտորիաները, որը լայն հնարավորություններ է բացում նրա հետագա ազգային զարգացման համար: Մեր երկրի արևմըտյան սահմանը ընդարձակվել նաև ի հաշիվ Քյոնիգսբերգի մարզը Սովետական Միությանը միացնելուն, որով Բալթիկ ծովում մեր ձեռքն է անցնում չսառչող լավ նավահանգիստ: Մերձբալթիկայում վերականգնված են Սովետական Լիտվան,



Սովետական Լատվիան, Սովետական Էստոնիան: Սա է ներկայիս մեր արևմտյան սահմանի ուրվագիծը, որը կարևորագույն նշանակություն ունի Սովետական Միության անվտանգությունն ապահովելու տեսակետից:

Հյուսիս-արևմուտքում մենք մեր սահմանը Ֆինլանդիայի հետ վերականգնեցինք 1940 թվի սովետա-ֆիննական հաշտության պայմանագրին համապատասխան: Բացի դրանից, Հյուսիսում Սովետական Միությանն է վերադարձվել Պեչենգայի (Պետսամոյի) շրջանի տերիտորիան:

Վերջապես, Հեռավոր Արևելքի մասին: Այստեղ Սովետական Միությանն են անցնում Սախալինի հարավային մասը և Կուրիլյան կղզիները, որ կարևոր նշանակություն ունեն Արևելքում Սովետական Միության անվտանգության համար: Մնում է հիշեցնել այն, որ վերականգնվել են մեր պետության իրավունքները Մանջուրիայի երկաթուղու նկատմամբ, ինչպես նաև վերա-

կանգնվել են մեր իրավունքները Մանջուրիայի հարավային մասում՝ Պորտ-Արթուրի և Դալնիի շրջանների նկատմամբ:

Այդ բոլոր շրջաններին, ինչպես նաև Ֆինլանդիայի տերիտորիայում Պորկկալա-Ուդդեում գտնվող մեր ռազմա-ծովային բազայի շրջանին մենք պետք է պատշաճ ուշադրություն նվիրենք, և քանի որ խոսքը վերաբերում է սովետական նոր տերիտորիաներին, անհրաժեշտ կլինի ուժեղ ուշադրություն մեր պետության կողմից դեպի դրանք:

Մենք պետք է որքան կարելի է շուտ բուժենք անհետաձգելի խընդիրները սովետական այն տերիտորիաների նկատմամբ, որոնք ժամանակավորապես գտնվում էին թըշնամի բանակների օկուպացիայի տակ: Գերմանացիները իրենցից հետո թողել են ավերված շատ քաղաքներ և հազարավոր ավերված ու կողոպտված գյուղեր և գյուղակներ: Զավթիչները վռնդվելուց հետո անմիջապես այդտեղ ամենուրեք սկսվեց վերականգնման աշխատանքը: Բայց



առայժմ կատարված է գործի միայն փոքր մասը: Ամբողջ սովետական ժողովրդի, սովետական բոլոր ռեսպուբլիկաների ջանքերը պետք է ուղղված լինեն այն բանին, որ օգնենք այդ շրջանների տնտեսական ու կուլտուրական կյանքի ամենաարագ և լիակատար վերականգնմանը: Վերականգնել գործարաններն ու ֆաբրիկաները, վերականգնել կոլխոզները, մեքենա-տրակտորային կայաններն ու սովխոզները, վերականգնել դպրոցներն ու հիվանդանոցները և վերականգնել բնակարանները, որպեսզի այդ վայրերի յուրաքանչյուր քաղաքային ու գյուղական բնակչի հնարավորություն տրվի նորից իր հարկը ունենալու և իր ընտանիքը տեղավորելու —այդ բոլորը մեր անհետաձգելի գործն է:

Անհրաժեշտ է, որ հոգատարությունն այն մարդկանց նկատմամբ, ովքեր պատերազմում էին և այժմ բանակից տուն են վերադառնում, ինչպես նաև հոգատարությունը հաշմանդամների նկատմամբ, հոգա-

տարությունը Կարմիր Բանակի ռազ-միկների որբացած ընտանիքների նը-կատմամբ համարվեն սովետական և պրոֆմիութենական, պարտիական և կոմերիտական կազմակերպություն-ների, ինչպես նաև կոլխոզների և նրանց գյուղական կազմակերպու-թյունների կարևորագույն պարտա-կանությունը: Մենք պետք է ամեն ինչ անենք, որպեսզի հաջողությամբ կատարենք այդ պատասխանատու խնդիրը և որքան կարելի է շուտ բուժենք պատերազմի հասցրած վեր-քերը: Այս է մեկ անհետաձգելի խնդիրը ևս:

Մենք հենց այժմ պետք է ձեռնա-մուխ լինենք լուծելու ժողովրդական տնտեսությունը բարձրացնելու ար-մատական խնդիրը, որպեսզի մի քա-նի տարվա ընթացքում զգալիորեն գերազանցենք երկրի գյուղատնտե-սական զարգացման նախապատե-րազմյան մակարդակից և ապահո-վենք ամբողջ բնակչության կենսա-կան մակարդակի զգալի բարձրա-ցումը: Այդ է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությունը վերականգնելու և



զարգացնելու 1946—1950 թվերի հնգամյա պլան, ինչպես նաև երկա-թուղային տրանսպորտի վերականգ-նման ու զարգացման համապա-տասխան պլան մշակելու մասին պարտիայի և կառավարության վեր-ջերս հրապարակված որոշման իմաս-տը: Մեր ժողովուրդը լավ գիտե Ստալինյան հնգամյակների ուժը, ո-րոնք ստեղծեցին մեր պետության հզորությունը և ապահովեցին մեր հաղթանակը: Մեզ անհրաժեշտ է ծանր արդյունաբերության նոր վե-րելք, որպեսզի ապահովենք երկիրը մետաղով, քարածխով, նավթով, շո-գեքարշերով, վագոններով, տրակ-տորներով, գյուղատնտեսական մեքե-նաներով, ավտոմոբիլներով, զանա-զան նավերով, էլեկտրոկայաններով և ուրիշ շատ բաներով: Գյուղերի և քաղաքների բնակչությունը սպասում է լայն սպառման ապրանքների ա-վելացման, ինչպես նաև սննդա-մթերքի մատակարարման բարե-լավման: Կոլխոզների կարիքների և մեր գյուղատնտեսության պա-հանջների բավարարումը հաստա-

ցել է ավելի քան երբևիցե: Մեր կուլտուրական պահանջները աճել և շատ ավելի բազմակողմանի են դարձել: Ոչ մի րոպե չի կարելի մոռանալ նաև մեր մեծ պարտականությունները՝ ինչպես հարկն է ապահովել երկրի պաշտպանության կարիքները, Կարմիր Բանակի կարիքները և Ռազմա-Ծովային Նավատորմի կարիքները: Մեզ մոտ գործազրկություն չկա և չի էլ լինի: Մեր երկրում բոլորն էլ աշխատանք ունեն, որովհետև մեզ մոտ աշխատավորների պետություն է: Մենք ավելի շատ պետք է մտածենք, թե ինչպես ավելի ճիշտ կազմակերպենք աշխատանքը արդյունաբերության մեջ, գյուղատնտեսության ասպարեզում, տրանսպորտում և մեր բոլոր հիմնարկներում, որպեսզի սովետական մարդու աշխատանքի արտադրողականությունը և նրա աշխատանքի որակը լավագույն արդյունքներ տան:

Մեր ժամանակներում, երբ գոյություն ունի բարձր տեխնիկա և արտադրության մեջ լայնորեն կիրառվում է գիտությունը, երբ արդեն



հնարավոր է դարձել նաև ատոմային էներգիայի և տեխնիկական ուրիշ մեծ հայտնագործությունների օգտագործումը, տնտեսական պլաններում պետք է առաջնակարգ ուշադրություն նվիրվի տեխնիկայի հարցերին, մեր արդյունաբերության տեխնիկական մակարդակը բարձրացնելու և տեխնիկական բարձրորակ կադրեր ստեղծելու հարցերին: Մենք պետք է հավասարվենք ժամանակակից համաշխարհային տեխնիկայի նվաճումներին արդյունաբերության ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և պայմաններ ապահովենք սովետական գիտության ու տեխնիկայի առավելագույն առաջադիմության համար: Թշնամին խանգարեց մեր խաղաղ ստեղծարար աշխատանքը: Բայց մենք տեղը կհանենք ինչպես հարկն է և կհասանենք այն բանին, որ մեր երկիրը ծաղկի: Մենք կունենանք և ատոմային էներգիա, և' ուրիշ շատ բաներ: (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում): Ձեռնամուխ լինենք, ու-

րեմն, այդ խնդիրների լուծմանը մեր բոլշևիկյան ամբողջ անսպառ եռանդով, սովետական մարդկանց ամբողջ հզոր եռանդով։ Աշխատե՛նք, ուրեմն, այնպես, ինչպես սովորեցնում է մեզ ընկեր Ստալինը։ (Բուռն ծափահարություններ)։

Վերջապես, մեր արտաքին-քաղաքական խնդիրների մասին։ Սովետական Միությունը միշտ առաջին տեղն է հատկացրել խաղաղության հաստատելու և մյուս երկրների հետ համագործակցելու հոգատարությանը հօգուտ ընդհանուր խաղաղության և միջազգային գործարար հարաբերությունների զարգացման։ Քանի դեռ մենք ապրում ենք «պետությունների սիստեմում» և ֆաշիզմն ու իմպերիալիստական ագրեսիան դեռ վերջնականապես արմատախիլ չեն արվել, մեր զգաստությունը խաղաղության հնարավոր նոր խախտիչների նկատմամբ չպետք է թուլանա, իսկ խաղաղասեր տերությունների համագործակցությունն ամրապնդելու հոգատարությունը առաջվա նման կլի-



նի մեր կարևորագույն պարտականությունը։



Մենք չունենք ավելի կարևոր մի խնդիր, քան ՄԵՐ ՀԱՂԹԱՆԱԿՆ ԱՄՐԱՊՆԴԵԼՈՒ խնդիրը, հաղթանակ, որին հասել ենք անհողդողդ պայքարով, և որը ճանապարհ բացեց մեր երկրի նոր մեծ վերելքի ու մեր ժողովրդի կենսական մակարդակի հետագա բարձրացման համար։ Մեր առջև դեռ երբեք չեն բացվել սոցիալիստական շինարարության այնպիսի թափի հնարավորություններ, ինչպես նաև Սովետական Միության ուժերի ծաղկման այնպիսի հնարավորություններ։ Մեր ժողովուրդը լի է հավատով դեպի իր մեծ գործը, դեպի Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գործը։ (Երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՛ սովետական ժողովուրդը՝ հաղթող ժողովուրդը, նրա Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։ (Երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ ապրի և ծաղկի մեր Մեծ

*Հայրենիքը, Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի Հայրենիքը:* (Բուռն ծափահարություններ):

*Կեցցե՛ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կառավարությունը:* (Բուռն, երկարատև ծափահարություններ):

*Կեցցե՛ Լենին-Ստալինի պարտիան՝ մեր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը:* (Բուռն, երկարատև ծափահարություններ):

*Կեցցե՛ Սովետական ժողովրդի առաջնորդ Մեծ Ստալինը:* (Բուռն, երկար չդադարող ծափահարություններ, որոնք վերածվում են օվացիայի: Բացականչություններ՝ «Մեծ Ստալինին ուռա՛»):

---

Ի տ. պատասխանատու խմբագրի՝
Ա. ՀԱՅՐՅԱՆ

ՎՖ 02383 *պ.* № 1458 *տիրաժ* 5200

**ՀՍՍՌ** *Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան.* 1945 *թ.*